Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ 1956 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Հ. ԲԱԴԱԼՅԱՆ
Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրի տեղակալ

1955 թվականի դեկտեմբերի 26-ից մինչև 29-ը տեղի ունեցավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան, որը քննության առավ և հաստատեց ՍՍՌՄ 1956 թվականի Պետական բյուջեն։

Սովետական մարդիկ մեծ խանդավառությամբ դիմավորեցին սեսիայի կողմից ՍՍՌՄ 1956 թվականի Պետական բյուջեի մասին ընդունված օրենքը, որը վառ կերպով արտահայտում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը՝ ապահովել մեր երկրի էկոնոմիկայի խաղաղ զարգացումը և աշխատավորության բարեկեցության ու կուլտուրայի հետագա անշեղ վերելքը։



1956 թվականի Պետական բյուջեն Գերագույն Սովետի կողմից հաստատվեց եկամուտների գծով 592 միլիարդ 761 միլիոն 156 հազար ռուբլի և ծախսերի գծով 569 միլիարդ 634 միլիոն 972 հազար ռուբլի, եկամուտների գերազանցումով ծախսերի նկատմամբ 23 միլիարդ 126 միլիոն 184 հազար ռուբլի։ Այդ միջոցները ամբողջապես ապահովում են այն վիթխարի խնդիրների իրականացումը, որ դրված են մեր երկրի առաջ վեցերորդ հնգամյակի առաջին տարում։

Բյուջեի ամբողջ եկամտից ավելի քան 501 միլիարդ ռուբլին, կամ եկամուտների 84,5 տոկոսը մուտք է լինելու արդյունաբերությունից, գյուղատնտեսությունից և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից։

Եթե բյուջեի եկամուտների գերակշռող մասը գոյանում է ժողովրդական տնտեսությունից, ապա իր հերթին բյուջեի ծախսային մասում նրա ամենամեծ հոդվածը ժողովրդական տնտեսության ֆինանսավորումն է։ 1956 թվականի բյուջեով ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանը, այսինքն՝ ծանր արդյունաբերության, շինարարական ինդուստրիայի, թեթև և սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի զար-



գացման համար ներդրված է 237 միլիարդ 325 միլիոն 529 հազար ռուբլի, կամ բյուջեի ամբողջ ծախսերի 41,7 տոկոսը։ Բայց ժողովրդական տնտեսության մեջ կատարվող ներդրումները չեն սահմանափակվում Պետական բյուջեից արվող հատկացումներով։ Բացի այդ գումարներից, ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին 1956 թվականին ժողովրդական տնտեսության մեջ կներդրվի 109 միլիարդ 658 միլիոն 670 հազար ռուբլի, որը բյուջեից տրվող միջոցների հետ միասին կկազմի 346 միլիարդ 984 միլիոն 199 հազար ռուբլի։ Այդ ներդրումները կապահովեն 1956 թվականի ժողովրդա-տնտեսական պլանով արդյունաբերության արտադրանքի նախատեսված աճը 1955 թվականի նկատմամբ 10,5 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրության աճը՝ 11 տոկոսով, սպառման միջոցներինը՝ 9,6 տոկոսով։

Մեր սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը հանդիսացող ծանր արդյունաբերության ձեռնարկությունների հետագա զարգացման վրա ծախսվելու է 158 միլիարդ 700 միլիոն ռուբլի, այդ թվում բյուջեից 100 միլիարդ 900 միլիոն ռուբլի կամ շուրջ 11

միլիարդ ռուբլով ավելի, քան 1955 թվականին։

Ծանր արդյունաբերության զարգացման համար կատարվող խոշոր հատկացումները հնարավորություն կտան 1956 թվականի ընթացքում լիովին իրականացնելու արդյունաբերությանը, գյուղատնտեսությանը, տրանսպորտին, շինարարությանը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին նոր, բարձր արտադրողականություն ունեցող և կատարելագործված մեքենաներով ապահովելու մասին պարտիայի և կառավարության առաջադրանքը։ Դրանով կլուծվի ժողովրդական տնտեսության մեջ լուրջ տեխնիկական պրոգրեսի, ինչպես նաև նոր տեխնիկա ներդնելու հարցը։

Պարտիան և կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու հարցում։ 1956 թվականին թեթև և սննդի արդյունաբերության ֆինանսավորմանը հատկացվում է բյուջեից և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցներից 26 միլիարդ ռուբլի, որն ապահովում է մսեղենի, ձկնեղենի, շաքարի, հրուշակեղենի, գործվածքեղենի, կոշկեղենի, ժամացույցների, կարի մեքենաների,



ամանեղենի, կահույքի և շատ այլ իրերի արտադրության զգալի աճը 1956 թվականին։

Գյուղատնտեսության հետագա վերելքին հատկացվում է 56 միլիարդ 600 միլիոն ռուբլի. այդ թվում՝ բյուջեից 48 միլիարդ 600 միլիոն ռուբլի։ Այդ գումարը գլխավորապես ծախսվելու է գյուղատնտեսության մեքենայացման մակարդակը բարձրացնելու և խամ ու խոպան հողերի շրջանում կազմակերպված նոր սովխոզների արտադրանքը ավելացնելու վրա։

1956 թվականի ընթացքում կապիտալ ներդրում է կատարվելու շուրջ 160 միլիարդ 800 միլիոն ռուբլու ծավալով, այդ թվում ծանր արդյունաբերության մեջ՝ 96 միլիարդ 600 միլիոն ռուբլի, տրանսպորտում՝ 21 միլիարդ 500 միլիոն ռուբլի, թեթև և սննդի արդյունաբերության մեջ՝ 7 միլիարդ 800 միլիոն ռուբլի, գյուղատնտեսության մեջ՝ 21 միլիարդ 300 միլիոն ռուբլի։

Բացի վերջին գումարից, պետությունը խոշոր օգնություն է ցույց տալիս կոլտնտեսություններին նաև վարկի ձևով։ Գյուղատնտեսական բանկը 5-րդ հնգամյակի ընթացքում կապիտալ շինարարական աշխատանքների համար կոլտնտեսություններին վարկ է տվել 16 միլիարդ ռուբլի։ 1956 թվականին

միայն գյուղբանկի կողմից կոլտնտեսային շինարարությանը տրամադրվող վարկը կկազմի 6 միլիարդ 400 միլիոն ռուբլի։

ՍՍՌՄ Պետական բյուջեն իր մեջ արտացոլում է պարտիայի և Սովետական կառավարության հոգատարությունը աշխատավորության կուլտուրական կյանքի մակարդակի հետագա բարձրացման գործում։

Հատկացումները սոցիալ-կուլտուրական միջոցառումների՝ դպրոցների, տեխնիկումների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, ֆաբգործուսների, գրադարանների, ակումբների, թատրոնների, մամուլի, ռադիոհաղորդումների և այլ կուլտուր-լուսավորական միջոցառումների, հիվանդանոցների, մանկամսուրների, սանատորիաների և առողջապահության, սպորտի ու ֆիզկուլտուրայի այլ հիմնարկների, թոշակների ու նպաստների համար կկազմեն 161 միլիարդ 505 միլիոն 181 հազար ռուբլի, որը 1955 թվականի համեմատությամբ ավել է 14 միլիարդ 500 միլիոն ռուբլով։

Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի կադրեր պատրաստելու համար հատկացվում է 23 միլիարդ 500 միլիոն ռուբլի։ 1956 թվականին երկիրը կստանա բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 760 հազար



մասնագետ, 120 հազար հոգով ավելի, քան 1955 թվականին։

Աշխատանքային ռեզերվների դպրոցներում և տեխնիկական ուսումնարաններում կպատրաստվեն 745 հազար որակյալ բանվորներ, իսկ գյուղմեխանիզացիայի ուսումնարաններում՝ 244 հազար տրակտորիստներ, կոմբայնավարներ և ՄՏԿ-ների համար այլ աշխատողներ։

Պետական բյուջեով երկրի պաշտպանությանը հատկացվում է 102 միլիարդ 538 միլիոն 920 հազար ռուբլի, որը կազմում է բյուջեի ողջ ծախսերի 17,9 տոկոսը և պակաս է նախորդ տարվա հատկացումներից 9 միլիարդ 600 միլիոն ռուբլով։

Այդ նպատակով Սովետական Միությունը վերջերս կրճատեց իր զինված ուժերը 640 հազար մարդով, հրաժարվեց Ֆինլանդիայի տերիտորիայում գտնվող Պորկկալա-Ուդդ ռազմա-ծովային բազայի օգտագործումից, լուրջ առաջարկություններ մտցրեց սպառազինությունները կրճատելու և պատերազմի վտանգը վերացնելու մասին, որոնք ուղղված են միջազգային լարվածության թուլացմանը։ Այդ քաղաքականության գործնական արտահայտությունը հանդիսացան ընկ. ընկ. Խրուշչևի, Բուլգանինի այցելությունները Հնդկաս-

տան, Բիրմա և Ավղանստան, որը վերածվեց խաղաղության և պետությունների խաղաղ գոյակցության հզոր ցույցի։

ՍՍՌՄ Պետական բյուջեն խաղաղության բյուջե է։

Այդ տեսակետից Սովետական Պետական բյուջեն արմատորեն տարբերվում է կապիտալիստական երկրների բյուջեներից, որտեղ բյուջեի միջոցների գերակշռող մասը ծառայում է ռազմական նպատակների համար։ ԱՄՆ-ի թերթերից շատերը ստիպված էին ընդունել, որ ՍՍՌՄ-ում կրճատվում են երկրի պաշտպանության ծախսերը, իսկ ԱՄՆ-ում ընդհակառակը՝ աճում են այդ ծախսերը։

ԱՄՆ-ի 1954—1955 թ. թ. պետական բյուջեով ծախսերը հաստատված էր 65 միլիարդ 600 միլիոն դոլար ընդհանուր գումարով, որի 68 տոկոսը հատկացված էր այսպես կոչված՝ «ազգային անկախության» ֆինանսավորմանը, այսինքն՝ ուղղակի ռազմական ծախսերին։ ԱՄՆ-ում ռազմական ծախսերի ամբողջ ծանրությունը ընկնում է աշխատավոր բնակչության ուսերի վրա։ Սակայն պետք է ասել, որ «ազգային անկախություն» հոդվածով պլանավորվող ծախսերից բացի, ռազմական ծախսերի են վերածվում նաև այսպես կոչված՝ «օգնություն» ուրիշ երկրներին հոդվածով նախատեսված հատկացումները, որոնք 1954—55 թ. թ. բյուջեում կազմում էին 2 միլիարդ 500 միլիոն դոլար։ Եթե նկատի ունենանք, որ կան ռազմական բնույթի նաև այլ ծախսեր, որոնք քողարկված են բյուջեի այլ ծախսերի մեջ, ապա ճիշտ պետք է համարել այն բնութագրումը, որ վերաբերվում է ամերիկյան բյուջեին, այսինքն այն, որ նրա 75 տոկոսը ծախսվում է ռազմական նպատակների վրա։



ԱՄՆ-ում տարեցտարի մեծացնելով ռազմական նպատակներին տրվող հատկացումները, բնակչության վրա ընկնող հարկերը կազմում են նրա եկամտի մեկ երրորդը, իսկ առողջապահությանը տրվող հատկացումները կրճատվում են այն դեպքում, երբ ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերի խոստովանությամբ միլիոնավոր ամերիկացիներ չեն օգտվում բժշկական օգնությունից, բժշկասանիտարական հիմնարկների խիստ պակասի պատճառով, իսկ բազմաթիվ վայրերում դպրոցական շենքեր չկան։ Զգալի չափերով կրճատվել են նաև կոմունալ-բնակարանային շինարարությանը, ժողովրդական կրթությանը տրվող հատկացումները։

Այդպիսին է բյուջեի պատկերը ոչ միայն ԱՄՆ-ում, այլև մյուս կապիտալիստական

երկրներում, ինչպիսիք են՝ Անգլիան, Ֆրանսիան և Հյուսիս-Ատլանտյան բլոկի մեջ մտնող մնացած երկրները։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան հաստատեց նաև Միութենական ռեսպուբլիկաների Պետական բյուջեները։

Միութենական ռեսպուբլիկաների բյուջեներով առանձնացված միջոցները լրիվ չափով ապահովում են այդ ռեսպուբլիկաների պահանջները ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում։ Այդ մասին էին վկայում տարբեր ռեսպուբլիկաներից եկած բազմաթիվ դեպուտատների ելույթները։

Հայկական ՍՍՌ Պետական բյուջեն հաստատված է մեկ միլիարդ 335 միլիոն 60 հազար ռուբլու չափով, որը նախորդ տարվա համեմատությամբ աճել է 10,7 տոկոսով։

Սովետական մարդիկ, ինչպես միշտ, այնպես էլ այս անգամ լի են վճռականությամբ պայքար ծավալելու 1956 թվականի բյուջեն հաջողությամբ կատարելու և գերակատարելու համար։

---

# ՋՐՈՒՅՑ ՀԱԿԱՀՈՂԱՐԱԿԱԿԱՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ԴԵՄ ՊԱՅՔԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ԱՐ. ՆԵՐՍԻՍՅԱՆ
Իրավաբանական գիտությունների թեկնածու

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ստեղծել են կայուն նյութական բազա աշխատավորների կուլտուրական կյանքն ու հանգիստը ապահովելու համար։ Ինչպես ՍՍՌՄ եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում կառուցվել են կուլտուրայի ու հանգստի բազմաթիվ օջախներ՝ ակումբներ, գրադարաններ, կուլտուրայի տներ, կինոներ, թատրոններ, զբոսայգիներ, ֆիզկուլտուրայի և սպորտի հրապարակներ և այլն։

Հաղորդակցության գործը դյուրին դարձնելու համար տրանսպորտի հիանալի միջոցներ են հանձնված բնակչության օգտագործմանը։

Աշխատավորների հանգիստ կյանքն ու ան-

վտանգությունն ապահովելու համար Սովետական պետությունը սահմանել է համապատասխան իրավական կանոններ և օրենքներ։ Մեր պետական ապարատը իր գործունեության ընթացքում անշեղորեն պայքարում է սոցիալիստական օրինականության պահպանման համար։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 130-րդ հոդվածում ասված է, որ «ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է պահպանել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան, կատարել օրենքները, պահպանել աշխատանքի կարգապահությունը, ազնվորեն վերաբերվել հասարակական պարտքին, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները»։

Սովետական քաղաքացիները անշեղորեն պաշտպանում են սովետական օրենքները։

Սակայն մեր հասարակության ներսում դեռ կան առանձին մարդիկ, որոնք խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները, խանգարում են բնակչության անդորրությունը և կատարում բազմաթիվ հակահասարակական արարքներ։ Այսպես, օրինակ, 1955 թվականի հուլիսի 16-ին «Հայէլեկտրո» մեխանիկական գործարանի աշխատողներ, կոմերիտականներ Բ. Զաքարյանը և Ս. Մար-



տիրոսյանը գարեջրի 2-րդ դահլիճում հարբելուց հետո, ծեծում են հաճախորդներին, չեն ենթարկվում ադմինիստրացիայի կարգադրությանը։ Երբ միլիցիայի աշխատողները նրանց կարգի են հրավիրում, նրանք փոխանակ ենթարկվելու, շարունակում են իրենց խուլիգանական արարքները։ Մեկ ուրիշ դեպք։ Ուսանող, կոմերիտական Աշոտ Աֆրիկյանը փորձում է առանց տոմսի մուտք գործել ռեսպուբլիկական ստադիոնը, երբ հսկիչը նրանից մուտքի տոմս է պահանջում, նա հայհոյում է հսկիչին և ուժ գործադրելով ստադիոն ներխուժում։ Միլիցիայի աշխատողները այդ նկատելով, Աֆրիկյանին կարգի են հրավիրում, պահանջելով, որ նա դուրս գա ստադիոնից։ Վերջինս չի ենթարկվում միլիցիայի աշխատողներին և շարունակում է հակահասարակական, խուլիգանական մի շարք այլ արարքներ կատարել։

Աշխատավորությունը իրավացիորեն պահանջում է վճռական պայքար ծավալել հակահասարակական երևույթների դեմ և արմատապես վերացնել այն։

Հակահասարակական երևույթների դեմ պայքարելու գործում խոշոր անելիքներ ունեն տեղական իշխանության օրգանները։ Նրանք

պետք է իրենց լիազորությունների սահմանում խստորեն հետևեն հասարակական կարգի պահպանմանը։ Աշխատավորների դեպուտատների Երևանի Քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն բազմաթիվ որոշումներ է ընդունել Երևանում հասարակական կարգը, քաղաքացիների գիշերային անդորրը և նրանց առողջությունը պահպանելու վերաբերյալ։ Սակայն Երևանի շրջսովետների գործկոմները, բնակկառավարչությունները լայնորեն չեն մասսայականացնում այդ որոշումները բնակչության մեջ, նրանց չեն մոբիլիզացնում այդ որոշումների կենսագործման համար։

Տեղական իշխանության օրգանները պետք է հսկողություն սահմանեն նաև իրենց տերիտորիայում գտնվող հիմնարկ-ձեռնարկությունների նկատմամբ, որպեսզի վերջիններս իրենց հաստատություններում խստորեն պահպանեն հասարակական կարգը, ապահովեն հասարակության անվտանգությունը։

Հակահասարակական երևույթների դեմ պայքարելու գծով վճռական դեր ունեն կատարելու հիմնարկ-ձեռնարկությունների, հասարակական կազմակերպությունների ղեկավարությունները, պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունները։



Հաճախ վանավան հիմնարկ-ձեռնարկություններում առանձին աշխատողներ կատարում են մանր գողություններ, խուլիգանություն, խախտում են աշխատանքի կարգապահությունը և լիարժեք չեն օգտագործում իրենց աշխատաժամանակը։ Օրինակ, Ավտոդողերի գործարանի աշխատողներ Լ. Սարգըսյանը և Մ. Համբարձումյանը գործարանում, այն էլ աշխատանքի ժամերին, երկար ժամանակ զբաղվելիս են եղել ղումար խաղալով։ Սակայն տեղական կազմակերպությունները ժամանակին հակահարված չեն տվել նման արարքներին։ Հակահասարակական այդ երևույթները տեղի են ունենում միայն այն պատճառով, որ առանձին ձեռնարկությունների կամ հաստատությունների ղեկավարներ և հատկապես պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները լրջորեն չեն զբաղվում աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործով, պատասխանատու չեն զգում հենց իրենց մոտ հասարակական կարգի պահպանման համար։

Ձեռնարկությունների պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպություններն ու նրանց ղեկավարները այնպես, ինչպես սիստեմատիկաբար զբաղվում

են պլանների կատարմամբ, նույն չափով պետք է զբաղվեն և հասարակական կարգի պահպանման գործով, որպեսզի հակահասարակական երևույթներ տեղի չունենան։ Իսկ դրա համար անհրաժեշտ է, որ նրանք մոտիկից ծանոթանան ձեռնարկության աշխատողներին, լինեն հոգատար նրանց նկատմամբ, հետաքրքրվեն նրանց կենցաղով։

Սովետական հիմնարկի յուրաքանչյուր ղեկավար պետք է լավ իմանա, թե իր հետ աշխատող յուրաքանչյուր բանվոր, ծառայող ինչպես է պահում իրեն ձեռնարկության, հիմնարկի, հասարակության մեջ, կամ ընտանիքում, ինչպես է կատարում իր պարտքը զավակների և ծնողների նկատմամբ։ Երևանի № 57 դպրոցի աշակերտ Ս. Դարբինյանը 1954 թվականին իբրև պատանի բնասեր եղել է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից։ Սակայն նրա ծնողների և դպրոցական կոլեկտիվի ոչ զգայուն վերաբերմունքի հետևանքով Դարբինյանը ընկնում է հանցագործ տարրերի ազդեցության տակ և սիստեմատիկաբար զբաղվում գողությամբ, իսկ հետագայում դատապարտվում ազատազրկման։

Հակահասարակական երևույթներ թույլ տվող անձանց հարցը հարկավոր է քննության





առնել հիմնարկ-ձեռնարկությունների, հասարակական կազմակերպությունների կոլեկտիվներում, կոլեկտիվ ներգործման միջոցով ուղղել նրանց։ Պետք է հիշել, որ աշխատավորության կոլեկտիվների ժողովները մեծագույն դպրոց են մարդկանց դաստիարակելու, նրանց մեջ դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունք մշակելու համար։

Եթե Երևան քաղաքի տրամվայներում, տրոլեյբուսներում, ավտոբուսներում առանձին ուղևորներ կատարում են հասարակական կարգի խախտում, ծխում են, երթևեկում են առանց տոմսի, իրենց պահում են անպատկառ, ապա այդ բացատրվում է նաև նրանով, որ հիշյալ տրանսպորտների վարչությունները իրենց սեփական գործը չեն համարում՝ զբաղվել հասարակական կարգի պահպանմամբ։

Հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարը կլինի ավելի արդյունավետ և ավելի վճռական, եթե բոլոր քաղաքացիները օգնեն հասարակական կարգը պաշտպանող անձանց, առաջին հերթին միլիցիոներներին, որպեսզի նրանք հաջողությամբ կատարեն իրենց պարտականությունները, ժամանակին հայտնաբերեն և պատասխանատվության ենթարկեն գողերին, խուլիգաններին և սպեկուլյանտներին։

# ԻՆՉՊԵՍ ԱՊԱՀՈՎԵՑԻՆՔ ՈՉԽԱՐՆԵՐԻ ԲԱՐՁՐ ԲՐԴԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

## Ալինի շրջանի Գուսանագյուղի կոլտնտեսության նախագահ Հ. ԱՎՈՅԱՆԻ պատմածը

*Ոչխարաբուծությունը անասնապահության առաջավոր և բարձր եկամտաբեր ճյուղերից մեկն է։ Դա ապացուցվում է մեր երկրի առաջավոր կոլտնտեսությունների փորձով։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը մեր երկրի կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և գյուղատնտեսության բոլոր աշխատողների առջև խնդիր դրեց զարգացնել ոչխարաբուծությունը։ Պլենումը սահմանեց, որ 1960 թվականին, 1954 թվականի համեմատությամբ, բրդի արտադրությունը երկրում պետք է ավելացվի 1,8 անգամ, ըստ որում նուրբ բրդինը՝ 4 անգամ։*

*Պլենումի որոշումը մոբիլիզացրեց մեր կոլտնտեսականների ուժերը անասնաբուծության այդ ճյուղը առաջ մղելու, բրդի, ինչպես նաև ոչխարի մսի արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու համար։*



*Մեր կոլտնտեսության ոչխարաբույծների կատարած եռանդուն աշխատանքը հիանալի արդյունք տվեց. բրդի արտադրության սահմանված պլանը ֆերման կատարեց 178 տոկոսով։ Ոչխարի բրդատվության բարձրացման ցուցանիշներով մեր կոլտնտեսությունը շրջանում առաջին տեղը բռնեց. մեկ ոչխարից ստացանք 3,6 կգ. բուրդ, պլանով նախատեսված 2,8 կգ.-ի դիմաց։*

*Նախորդ տարիների համեմատությամբ մեծ չափով բարձրացրել ենք նաև այդ թանկարժեք հումքի որակը։ Անցած տարի, օրինակ, մեր ստացած բրդի մոտ 70 տոկոսն էր նրբագեղմ, այս տարի արդեն այն հասցրել ենք մոտ 90 տոկոսի։ Դրա շնորհիվ էլ զգալիորեն ավելացան կոլտնտեսության եկամուտները։*

*Բացի դրանից, 1955 թվականի ընթացքում մենք զգալի չափով ավելացրինք նաև ոչխարների մսի արտադրությունը։ Հենց միայն ազատ գնման կարգով պետությանը հանձնեցինք 400 ոչխար, բոլորն էլ միջակ և միջակից բարձր գիրությամբ։*

*Այս ցուցանիշները մենք ձեռք ենք բերել ոչխարների ցեղը, կերակրումը և խնամքը բարելավելու շնորհիվ։ Ընդամենը 3—4 տարի առաջ մեր կոլտնտեսության հոտերը*

կազմված էին մեծ մասամբ տեղական կոպտաբուրդ ոչխարներից: Այժմ մենք տեղական և ոչ մի ոչխար չունենք. բոլորն էլ նրբաբուրդ և կիսանրբաբուրդ մետիսներ են: Այդ բանին մենք հասել ենք արհեստական սերմնավորումը հետևողականորեն կիրառելու միջոցով: Եվ դա հիանալի արդյունք է տալիս. հոտում նրբագեղմ ոչխարների թիվը տարեցտարի ավելանում է: Արհեստական սերմնավորման հաջողությունն ապահովելու նպատակով մենք օրինակելիորեն ենք կազմակերպել ցեղական արտադրողների (խոյերի) խնամքը: Դա վճռական նշանակություն ունի նրբագեղմ գառներ ստանալու համար: Փորձը ցույց է տալիս, որ արհեստական սերմնավորումը հոտի ցեղական կազմը բարելավելու գործում կարևոր միջոցառում է հանդիսանում:

Ոչխարների բրդատվության բարձրացման գործում մեծ դեր խաղաց նաև կերակրման բարելավումը: Նախորդ տարիներին մենք բիչ բուրդ էինք ստանում նաև այն պատճառով, որ ոչխարները ձմռան ընթացքում վատ էին կերակրվում և գարնանը, արոտի դուրս բերելիս, արդեն հյուծված էին լինում: 1955 թվականի ձմռանը մենք այդ դրությունը կանխեցինք: Անհրաժեշտ քանակությամբ



խոտ կուտակած լինելու շնորհիվ ձմռանը ոչխարները շատ լավ կերակրվեցին և գարնանը արոտի դուրս եկան գեր վիճակում: Իսկ դա շատ բուրդ ստանալու կարևոր նախապայմանն է:

Կոլտնտեսության վարչությունը միջոցներ ձեռք առավ նաև անասունների արոտը լավ կազմակերպելու ուղղությամբ: Նախորդ տարիներին ոչխարների հոտերը պահում էինք Ալագյազի հարուստ արոտավայրերում: 1955 թվականին մենք այլ կերպ վարվեցինք՝ հոտերը պահեցինք Ղարախաչ կոչվող ամառանոցում, որտեղ խոտը ավելի որակով ու փարթամ էր: Այստեղ ոչխարաբուծական ֆերմայի համար հատկացվեց հատուկ արոտատեղ, այն բաժանվեց առանձին մասերի և դրանք օգտագործվեցին հերթականորեն:

Պարտիական կազմակերպությունը մեծապես ուժեղացրեց ֆերմայի կոլեկտիվում կատարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, բարձրացվեց հովիվների և մյուս անասնապահների պատասխանատվությունը իրենց հանձնարարված գործի նկատմամբ:

Անասունների խնամքը բարելավելու գործում կարևոր նշանակություն ունի նաև անասնապահական լավագույն շենքեր ունենա-

լը։ Վերցնենք թեկուզ մսուրային շրջանում անասունների խնամքի կազմակերպումը։ Բրդատվության բարձրացման գործում չափազանց մեծ նշանակություն ունի, թե ոչխարները, ինչպես և ինչպիսի գոմերում են պահվում։ Այս գործում ևս մեր կոլտնտեսությունն զգալի հաջողության է հասել։ Մեր ոչխարաբուծական ֆերման այժմ ապահովված է տիպային գոմերով։

Օրերս մենք հանրագումարի բերեցինք անասնաբուծության գծով տնտեսական տարվա արդյունքները։ Կոլտնտեսության վարչության որոշմամբ մի շարք հովիվներ իրենց լավ աշխատանքի համար ստանում են լրացուցիչ վարձատրություն։ Իր լավ աշխատանքի համար բոլորից շատ լրացուցիչ վարձատրություն է ստանում ավագ հովիվ Շ. Թովմասյանը, որը յուրաքանչյուր ոչխարի միջին բրդատվությունը հասցրել է 3,7 կգ.-ի։ Լրացուցիչ վարձատրություն ստացողների թվումն են նաև հովիվներ Ա. Մուրադյանը, Վ. Խնսյանը, Կ. Սուքիասյանը, Գ. Հովհաննիսյանը և ուրիշները։

Այժմ մեր կոլտնտեսության վարչությունը, պարտկազմակերպությունը և բոլոր կոլտնտեսականները հոգ են տանում անասունների ձմեռումը հաջող անցկացնելու, 1956 թը-



վականին նոր հաջողությունների հասնելու համար։

Ոչխարաբուծության վերաբերյալ վերջերս Մոսկվայում տեղի ունեցած Համամիութենական խորհրդակցությունը, որը հրավիրվել էր ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից, նոր խնդիրներ դրեց երկրի ոչխարաբույծների, գյուղատնտեսության բոլոր աշխատողների և մեխանիզատորների առջև։ Աշխատավորության աճող պահանջմունքները բավարարելու համար մեզանից պահանջվում է մեծ չափով ավելացնել բրդի, ինչպես նաև ոչխարի մսի արտադրությունը։ Մեծ աշխատանք պետք է կատարենք հատկապես նուրբ բրդի արտադրությունն ավելացնելու համար։ Ոչխարաբուծության վերաբերյալ Համամիութենական խորհրդակցությունը նշել է այդ խնդիրները հաջողությամբ լուծելու կոնկրետ ուղիները։ Հարկավոր է ավելի լայնորեն կիրառել ոչխարների արհեստական սերմնավորումը, ընդարձակել կերի բազան, ոչխարաբուծական ֆերմաներն ապահովել բազմապիսի ու որակյալ կերերով, ավելի լայն չափով կիրառել աշխատանքի լրացուցիչ վարձատրությունը և բարելավել աշխատանքի կազմակերպումը ֆերմաներում։

*Քննարկելով խորհրդակցության մասնակիցների ընդունած նամակը, մենք պարտավորվել ենք 1956 թվականին յուրաքանչյուր ոչխարից ստանալ 3,9—4 կիլոգրամ բուրդ, ավելի բարձրացնել ոչխարի մսի տեսակարար կշիռը պետությանը հանձնվող մսի ընդհանուր քանակում, պետությանը հանձնել ավելի մեծ քանակությամբ նուրբ և կիսանուրբ բուրդ։*

*Մեր ոչխարաբույծները ջանք չեն խնայի այդ պարտավորությունները ճշտորեն կատարելու համար։*

---



## ՆՇԱՆԱՎՈՐ ԱՎԱՆԴ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Ն. ՊԱՍՏՈՒԽՈՎ

*Միջազգային այն կարևոր իրադարձությունների մեջ, որոնցով այնքան հարուստ էր անցած 1955 թվականը, նշանավոր տեղ է գրավում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Անդամ Ն. Ս. Խրուշչևի Հնդկաստան, Բիրմա և Աֆղանստան կատարած ուղևորությունը։*

*Ամփոփելով այդ ուղևորության արդյունքները, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան նշեց, որ սովետական պետական ղեկավար գործիչների Ասիայի երկրները կատարած բարեկամական այցը ավերածվեց քաղաքական մի այնպիսի մեծ իրադարձության, որը նպաստում է խաղաղության ամրապնդմանը Ասիայում և Հեռավոր Արևելքում, ինչպես նաև լարվածության հետագա*

թուլացմանը միջազգային հարաբերություններում։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը քննարկելով ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի հաղորդումները Հնդկաստան, Բիրմա և Աֆղանստան կատարած իրենց ուղևորության մասին, իր լիակատար գոհունակությունը հայտնեց այդ ուղևորության արդյունքների առթիվ։ Սովետական պառլամենտը միահամուռ կերպով հավանություն տվեց ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի Ասիայի այդ երկրները կատարած ուղևորության ժամանակ վարած գործունեությանը, որպես մի գործունեության, որը լիովին համապատասխանում է Սովետական Միության արտաքին խաղաղասիրական քաղաքականությանը և նպաստում խաղաղության, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության գործի ամրապնդմանը։ Դեպի Ասիայի բարեկամական երկրները սովետական ղեկավարների կատարած ուղևորության արդյունքները՝ ՍՍՌՄ արտաքին քաղաքականության խոշոր հաջողությունն են, մի նշանավոր ավանդ խաղաղության, ժողովուրդների միջև բարեկամության և համագործակցության ամրապնդման գործում։ Այդ պատմական ուղևորությունը բարերար ազդեցություն ունեցավ



և շարունակում է ունենալ ժամանակակից միջազգային ամբողջ իրադրության վրա։ Այն կնպաստի պատերազմի կողմնակիցների ուժերի թուլացմանը և խաղաղության ամրապնդմանը ամբողջ աշխարհում։

***

Սովետական ղեկավարները ավելի քան երկու տասնյակ հազար կիլոմետր ճանապարհ անցան Ասիայի անծայրածիր տարածություններում։ Ընկերներ Ն. Ա. Բուլգանինը և Ն. Ս. Խրուշչևը մեկ անգամ չէ, որ թռիչք կատարեցին հավերժական ձյունով ծածկված Հիմալայան լեռնագագաթների վրայով, ավտոմեքենաներով անցան Հարավային Հնդկաստանի գեղատեսիլ անկյուններից մեկում գտնվող «Երկնագույն սարերը» (Նիլգիրին)։ Նրանք անցան Բիրմայի տերիտորիան՝ Ռանգունից մինչև Մանդալայ և ապա, նորից վերադառնալով Հնդկաստան, եղան այդ երկրի ծայր հյուսիսում՝ Քաշմիրում։

Սովետական ղեկավարները այցելեցին ասիական երեք պետությունների մայրաքաղաքները, մի շարք քաղաքներ, արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկություններ, նորակառույցներ, ուսումնական հաստատություններ և գիտա-հետազոտական

հիմնարկներ։ Նրանք հանդիպումներ և զրույցներ ունեցան բանվորների, գյուղացիների, ինտելիգենտների, տարբեր դասակարգերի և սոցիալական խավերի ներկայացուցիչների հետ։ Նրանց, որպես ամենաթանկագին հյուրերի, որպես եղբայրների, հսկայական բերկրանքով ողջունում էին հարյուր հազարավոր և միլիոնավոր մարդիկ։

Այդ հրճվալից հանդիպումների մեջ իրենց արտահայտությունն էին գտնում խոր հարգանքի, ջերմ սիրո և բարեկամության այն անկեղծ զգացմունքները, որ տածում են Հնդկաստանի, Բիրմայի և Ավղանստանի ժողովուրդները հերոսական սովետական ժողովրդի նկատմամբ՝ խաղաղության և մարդկության լուսավոր ապագայի համար մղվող պայքարում նրա մատուցած մեծ ծառայությունների համար։

Սովետական ղեկավարների Հնդկաստան, Բիրմա և Ավղանստան կատարած ուղևորության անմիջական և ամենակարևոր արդյունքը հանդիսացավ Սովետական Միության և Ասիայի այդ երեք երկրների է՛լ ավելի մերձեցումը, նրանց ժողովուրդների բարեկամության և համագործակցության ամրապնդումը։

Հնդկաստանում, Բիրմայում և Ավղանստա-



նում գտնվելու ժամանակ ընկերներ Ն. Ա. Բուլգանինը և Ն. Ս. Խրուշչևը բանակցություններ ունեցան այդ երկրների պետական գործիչների հետ։ Բանակցությունների հետևանքով, որոնք տեղի ունեցան անկեղծության, վստահության և փոխադարձ ըմբռնման պայմաններում, ստորագրվեցին կարևոր փաստաթղթեր, որոնցով որոշվում են քաղաքական և տնտեսական հարաբերությունները Սովետական Միության և այդ պետությունների միջև։

Սովետա-հնդկական, սովետա-բիրմական և սովետա-ավղանական համատեղ հայտարարություններում արտահայտված է այդ հայտարարություններն ստորագրած երկրների ջերմ ձգտումը՝ ամեն կերպ ամրապնդել միմյանց միջև բարեկամությունը և խաղաղ համագործակցությունը։ Հայտարարություններում արտահայտված է այդ պետությունների հայացքների ընդհանրությունը միջազգային այն մի շարք պրոբլեմներում, որոնք հրատապ կարգավորում են պահանջում։

Սովետական Միությունը, Հնդկաստանը, Բիրման և Ավղանստանը հայտարարեցին, որ իրենք հաստատապես կողմնակից են խաղաղության և ժողովուրդների համագործակցության ապահովման ամուր հիմք հանդիսացող

հինգ հայտնի սկզբունքներին։ 1955 թվականի դեկտեմբերի 14-ին Դելիում սովետական ղեկավարների կազմակերպած պրես-կոնֆերանսում Ն. Ա. Բուլգանինի արած հայտարարության մեջ տրված է հինգ սկզբունքների և միջազգային հարաբերություններում նրանց նշանակության սպառիչ գնահատականը։

«...Այդ սկզբունքները,— ասված է հայտարարության մեջ,— լիովին համապատասխանում են Սովետական կառավարության արտաքին քաղաքականությանը, մի քաղաքականություն, որ նա վարել է և վարում է Սովետական պետության գոյության ամբողջ ընթացքում։ Դրանք արդեն հավանության են արժանացել մի ամբողջ շարք երկրների կողմից և դրվել Բանդունգի կոնֆերանսի որոշումների հիմքում։ Այդ սկզբունքների ընդունումը բոլոր մյուս պետությունների, այդ թվում ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կողմից՝ կարևոր քայլ կհանդիսանար միջազգային լարվածության հետագա թուլացման և ժողովուրդների միջև անհրաժեշտ վստահություն ստեղծելու ճանապարհին։ Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա վարել է և վարելու է խաղաղության և ժողովուրդների սովերեն իրավունքները հարգելու



քաղաքականություն, չհարձակման, հավասարության և փոխադարձ շահավետության, մյուս պետությունների ներքին գործերին չմիջամտելու քաղաքականություն, տարբեր հասարակական և քաղաքական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականություն։ Այդ քաղաքականությունը բխում է Սովետական պետության բուն էությունից, որը շարունակ և հետևողականորեն վարում է խաղաղության քաղաքականություն»։

Համատեղ հայտարարություններում մեծ ուշադրություն է դարձվում մեր օրերի միջազգային կարևորագույն հարցերից մեկի՝ ընդհանուր զինաթափման պրոբլեմի վրա։ ՍՍՌՄ-ը, Հնդկաստանը, Բիրման և Աֆղանիստանը պնդում են, որ միջազգային համաձայնագրեր կնքվեն սպառազինությունները զգալիորեն կրճատելու, ատոմային և ջրածնային զենքն անպայման արգելելու և այդ համաձայնագրերի կատարման նկատմամբ միջազգային էֆեկտիվ վերահսկողություն հաստատելու մասին։

«...Ռազմական դաշինքները կամ ռեգիոնալ ռազմական բլոկների ստեղծումը խաղաղության և անվտանգության ապահովման միջոց չէ,— ասված է սովետա-հնդկական հա-

մատեղ հայտարարությունում։ Այդպիսի դաշինքները ընդլայնեցին «սառը պատերազմի» սահմանները և անկայունության տարր մըտցրին համապատասխան շրջաններում, ավելացրին սարսափն ու լարվածությունը և ստեղծեցին լրացուցիչ խոչընդոտներ, որոնք կանգնած են համապատասխան երկրների խաղաղ զարգացման ճանապարհին։ Խաղաղությունը և ժողովուրդների իսկական անվտանգությունը կարող են ապահովվել միայն պետությունների կոլեկտիվ ջանքերով»։ Նույն հայացքներն արտահայտված են նաև սովետա-բիրմական և սովետա-ավղանական համատեղ հայտարարություններում։

Սովետական Միությունը, Հնդկաստանը, Բիրման և Ավղանստանը վճռականորեն արտահայտվում են այն բանի օգտին, որ բոլոր վիճելի հարցերը լուծվեն բանակցությունների միջոցով։ Նրանք հույս են հայտնում, որ միջազգային վիճելի հարցերը, մասնավորապես Ասիայում, պետք է լուծվեն անհապաղ՝ հօգուտ միջազգային խաղաղության և անվտանգության։ Միջազգային չլուծված այդ հարցերի թվին են պատկանում այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի օրինական իրավունքների բավարարումը առափնյա կղզիների և



Տայվան կղզու նկատմամբ. կորեական հարցի լուծումը կորեական ժողովրդի ազգային իրավունքների ճանաչման հիման վրա և Հեռավոր Արևելքում խաղաղությունն ապահովելու շահերին համապատասխան. քաղաքական կարգավորումը Հնդկաչինում՝ Ժնևյան համաձայնագրին համապատասխան։

Սովետա-հնդկական համատեղ հայտարարության մեջ ընդգծված է, որ Ասիայում կայուն խաղաղության ապահովումն անհնարին է առանց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային հատկացնելու նրա օրինական տեղը Միավորված Ազգերի Կազմակերպությունում։ Այն մասին, որ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան իրավամբ իրեն պատկանող տեղը պետք է գրավի միջազգային այդ կազմակերպությունում, խոսվում է նաև սովետա-բիրմական և սովետա-ավղանական համատեղ հայտարարություններում։

Սովետական Միության և Ավղանստանի ղեկավար պետական գործիչների միջև Քաբուլում տեղի ունեցած բանակցությունների հետևանքով համաձայնություն ձեռք բերվեց և համապատասխան արձանագրություն ստորագրվեց ՍՍՌՄ և Ավղանստանի միջև 1931 թվականի հունիսի 24-ին կնքված չեզոքության և փոխադարձ չհարձակման Պայմանա-

գրի գործողության ժամկետը երկարացնելու մասին։ Այդ ակտը է՛լ ավելի կամրապնդի երկու բարի հարևանների՝ Սովետական Միության և Աֆղանստանի սերտ բարեկամության հնամենի կապերը, երկրներ, որոնք ունեն 2.346 կիլոմետրի վրա ձգվող ընդհանուր սահման։

Ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի Հնդկաստան, Բիրմա և Աֆղանստան գտնվելու ժամանակ քննության առնվեցին Սովետական Միության և այդ երեք երկրների առևտրական, տնտեսական և կուլտուրական կապերի հարցերը։

Բանակցությունների մասնակիցները միահամուռ կերպով գտան, որ անհրաժեշտ է այդ կապերն ավելի զարգացնել և ընդլայնել։

Սովետա-հնդկական կոմյունիկեում, որ ստորագրված է բանակցությունների հետևանքով, արտահայտված է երկու երկրների ցանկությունը՝ զարգացնել տնտեսական համագործակցությունը և առավել հնարավոր չափով ավելացնել փոխադարձորեն շահավետ առևտրի ծավալը։

Սովետական Միությունը համաձայնվեց երեք տարվա ընթացքում Հնդկական Ռեսպուբլիկային վաճառել մեկ միլիոն տոննա սև մետաղի պրոկատ, նավթի հանույթի համար ան-



հրաժեշտ սարքավորում, լեռնարդյունաբերության սարքավորում և այլ սարքավորում։ Հնդկական հասարակությունը խորին երախտագիտության զգացմունքով ընդունեց այդ փաստը, իրավամբ այն դիտելով որպես Սովետական Միության անշահախնդիր ցանկության դրսևորում՝ օգնելու Հնդկաստանին նրա արագ ինդուստրացման գործում։

Իր հերթին Սովետական Միությունը ավելացնելու է հնդկական զանազան ապրանքների գնումները։ ՍՍՌՄ-ը և Հնդկաստանը պայմանավորվեցին նաև, որ իրենց երկրների միջև կազմակերպելու են կանոնավոր ջրային և օդային հաղորդակցություն։

Բիրմայում տեղի ունեցած բանակցությունների հետևանքով համաձայնություն ձեռք բերվեց, որ Սովետական Միությունը Բիրմային օգնություն ցույց կտա և նրա հետ կհամագործակցի գյուղատնտեսական զարգացման ծրագրի նախապատրաստման, հիմնական իրրիգացիոն աշխատանքների կատարման, արդյունաբերական որոշ ձեռնարկությունների ստեղծման գործում։ Դրա դիմաց Բիրման Սովետական Միությանը մատակարարելու է բրինձ՝ իր արտահանության հիմնական մթերքը։ Ի նշան բիրմական ժողովրդի նկատմամբ ունեցած բարեկամեցողու-

թյան և հարգանքի, ընկերներ Ն. Ա. Բուլգանինը և Ն. Ս. Խրուշչևը Սովետական Միության կառավարության անունից և նրա հանձնարարությամբ Բիրմայի ժողովրդին նվեր առաջարկեցին՝ ՍՍՌՄ ուժերով ու միջոցներով Ռանգունում կառուցել և կահավորել տեխնոլոգիական ինստիտուտ։ Բիրմայի կառավարությունը Սովետական Միության կառավարության և ժողովրդի նկատմամբ խորին շնորհակալության զգացմունքով ընդունեց այդ նվերը։ Իր հերթին Բիրմայի ժողովրդի անունից նրա կառավարությունը Սովետական Միությանը նվեր առաջարկեց համապատասխան քանակությամբ բրինձ և այլ ապրանքներ։ Սովետական ղեկավարները ՍՍՌՄ ժողովուրդների անունից շնորհակալությամբ ընդունեցին այդ նվերը։

Սովետական Միությունը Հնդկաստանի, Բիրմայի և Աֆղանստանի հետ, ինչպես նաև բոլոր մյուս երկրների հետ, համագործակցում է հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա։ Դա Սովետական Միության հետ համագործակցող երկրների առաջ բաց է անում տնտեսական անկախ զարգացման հեռանկարներ՝ ի բարօրություն իրենց ժողովուրդների, առանց իմպերիալիստական տերությունների ստրկական փոխա-



ռությունների և այն տխրահռչակ «օգնության», որ իմպերիալիստական տերություններն օգտագործում են իրենց շահադիտական քաղաքական և ռազմա-ստրատեգիական նպատակներն իրականացնելու համար։

Հնդկաստանում, Բիրմայում և Աֆղանըստանում ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի ունեցած ելույթները կրկին անգամ համոզիչ կերպով ցույց տվին, որ սովետական ժողովուրդը միշտ ջերմ համակրանքի զգացմունք է տածել և տածում է Ասիայի ժողովուրդների այն արդարացի պայքարի նկատմամբ, որ նրանք մղում են իրենց ազգային անկախության համար, ընդդեմ իմպերիալիզմի գաղութային սիստեմի։

Հնդկաստանի և Ասիայի մյուս երկրների ժողովուրդները խորին երախտագիտությամբ ընդունեցին սովետական ղեկավարների խոսքերը, որով նրանք իրենց բարոյական աջակցությունն արտահայտեցին հնդիկ ժողովրդի նկատմամբ, որը պայքարում է Գոան, Հընդկաստանի այդ օրինական տերիտորիան, Հնդկաստանին վերամիավորելու համար, մի տերիտորիա, որ զավթել է Փորթուգալիան և իր ձեռքում է պահում ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանների օգնությամբ։ Հնդիկ ժողովուրդը բարձր գնահատեց սովետական ղե-

կավարների նաև այն հայտարարությունները, որով նրանք դատապարտեցին գաղութարարների ագրեսիվ ոտնձգությունները Քաշմիրում և նշեցին այն անվիճելի փաստը, որ բնության մեջ գոյություն չունի այսպես կոչված քաշմիրյան պրոբլեմը, քանի որ այն արդեն լուծել է ինքը՝ Քաշմիրի ժողովուրդը, Քաշմիրը դիտելով որպես Հնդկաստանի Ռեսպուբլիկայի մի անբաժանելի մասը։

Դեպի Ասիայի բարեկամական երկրները կատարած ուղևորության ժամանակ սովետական ղեկավարները իրենց ելույթներում մերկացրին և վճռականորեն դատապարտեցին ժողովուրդների ճնշման ու հարստահարման գաղութային սիստեմը։

Այն ժողովուրդների նկատմամբ, որոնք դեռևս չեն ազատագրվել գաղութային ճընշումից, սովետական ժողովրդի կողմից տածվող համակրանքն ու կարեկցությունը, որ այնքան բացահայտորեն արտահայտեցին իրենց ելույթներում Ն. Ա. Բուլգանինը և Ն. Ս. Խրուշչևը, հսկայական տպավորություն գործեցին գաղութային և կախյալ երկրներում։ Այդ երկրների ժողովուրդները սովետական ղեկավարների ելույթներում տեսան սովետական ժողովրդի բարոյական հզոր օգնությունը՝ իրենց իրավունքների, իրենց ազատու-



թյան և անկախության համար մղվող պայքարում։

Չինական «Ժենմինժիբաո» թերթը գրել է.

Սովետական ղեկավարների Քաբուլում գտնվելու ժամանակ ՍՍՌՄ և Աֆղանստանի կառավարությունները պայմանավորվեցին համաձայնագրեր կնքել սովետա-աֆղանական տնտեսական համագործակցության հետագա ընդլայնման մասին։ Այդ համաձայնագրերը, մասնավորապես, նախատեսում են, որ Սովետական Միությունը համագործակցելու է Աֆղանստանի հետ նրա գյուղատնտեսության զարգացման, հիդրոէլեկտրակայանների, իռիգացիոն կառուցվածքների և ավտովերանորոգման արհեստանոցների շինարարության բնագավառում, ինչպես նաև Քաբուլի օդանավակայանի վերակառուցման գործում։

ՍՍՌՄ կառավարությունը համաձայնեց Աֆղանստանին ցույց տալ ինչպես տեխնիկական, այնպես էլ ֆինանսական օգնություն, նրան տրամադրելով 100 միլիոն ամերիկյան դոլար գումարի երկարատև վարկ՝ Աֆղանստանի էկոնոմիկայի զարգացման համար։

«Սովետական Միության, Հնդկաստանի և Չինաստանի նման երկրների, որտեղ ապրում է ամբողջ աշխարհի բնակչության կեսը,

ներու համախմբվածությունը Ասիայի խաղաղասեր մյուս երկրների ժողովուրդների հետ՝ հնարավորություն կտա ասիական ժողովուրդներին իրենց բախտը պահելու իրենց սեփական ձեռքերում։ Եվ որքան էլ կատաղի պայքար մղեն Արևմտյան գաղութարարները Ասիայում, ամբողջ ուժով ձգտելով պահպանել իրենց տիրապետությունը Ասիայի ժողովուրդների վրա, գաղութային սիստեմը շուտով փուլ կգա, գաղութակալության ժամանակն անցել է անդառնալիորեն, Ասիայի ժողովուրդները վճռականորեն գործում են իրենց շահերին համապատասխան, ամրապնդում են իրավահավասար և փոխադարձորեն շահավետ միջազգային համագործակցությունը, ստեղծում իրենց սեփական անկախ և բարգավաճող կյանքը»։

Սովետական ղեկավարների ուղևորության նշանակությունը շատ հեռու է գնում Ասիայի այն երկրների սահմաններից, որ այցելեցին նրանք։ Այդ ուղևորությունը հսկայական միջազգային նշանակություն ունեցավ։ Հնդկաստանի, Բիրմայի և Աֆղանստանի հետ Սովետական Միության ունեցած բարեկամության և համագործակցության օրինակով կրկին անգամ հաստատվեց ՍՍՌՄ արտաքին քաղաքականության լենինյան հիմնական սկզբ-



բունքի՝ տարբեր սոցիալ-քաղաքական սիստեմների պատկանող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի ճշտությունը և կենսական մեծ ուժը։

Հնդկաստանի, Բիրմայի, Աֆղանստանի և Ասիայի ու Աֆրիկայի մի շարք այլ երկրների, որոնք Բանդունգի պատմական կոնֆերանսում հռչակեցին իրենց նվիրվածությունը խաղաղ գոյակցության գաղափարին, դեմոկրատական և խաղաղասիրական հասարակայնությունը սովետական ղեկավարների դեպի Ասիայի երկրները կատարած ուղևորությունը արդարացիորեն գնահատեց որպես այդ գաղափարի մի նոր հաղթանակ։

Մեկնաբանելով սովետա-հնդկական համատեղ հայտարարությունը, հնդկական «Հընդուստան» թերթը գրել է, որ այն «պետք է բնորոշվի որպես պատմական մի վսեմ հայտարարություն», որը «ազդեցություն է ունենալու ոչ միայն հնդկա-սովետական հարաբերությունների, այլև միջազգային հարաբերությունների և մարդկության ապագայի վրա... Այդ հայտարարության մեջ պարունակվող խաղաղության և համագործակցության կոչը,— ընդգծել է թերթը,— ուղղված է աշխարհի բոլոր երկրներին։ Այլ ուղի չի

կարող լինել մարդկության անվտանգության և բարեկեցության ապահովման համար»։

Սովետական ղեկավարների դեպի Ասիայի երկրները կատարած ուղևորության հաջողությունը մեծ բերկրանքով ողջունեցին մեծ Չինաստանի, Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների ժողովուրդները։ Խաղաղության և բարեկամության այդ այցը դրական գնահատականի արժանացավ արևմտյան երկրների հասարակական լայն շրջաններում։

Սակայն արևմտյան երկրների ռեակցիոն մամուլը և մի շարք քաղաքական գործիչներ ստի և զրպարտության կամպանիա սկսեցին Սովետական Միության դեմ, ամեն կերպ ճգնելով նվազեցնել այն հսկայական դրական նշանակությունը, որ ունեցավ սովետական ղեկավարների դեպի Ասիայի երկրները կատարած ուղևորությունը խաղաղության գործի համար։

Զուր ճիգեր։ Ռեակցիոն մամուլի և արևմտյան որոշ երկրների պետական ու հասարակական գործիչների չարամիտ հարձակումները Սովետական Միության և Ասիայի երկրների ամրապնդվող բարեկամության



դեմ՝ միայն ցույց են տալիս այն նյարդայնությունն ու շփոթվածությունը, որ տիրում է ագրեսիվ շրջաններում, միջազգային լարվածությունը թուլացնելու և պետությունների բարեկամական համագործակցությունն ամրապնդելու գործի թշնամիների մեջ, գաղութարարների մեջ։

Դեկտեմբերի 21-ին մեր Հայրենիքի մայրաքաղաքի աշխատավորները սրտագին դիմավորեցին հեռավոր ուղևորությունից վերադարձած ընկերներ Ն. Ա. Բուլգանինին և Ն. Ս. Խրուշչևին։ Այդ ջերմ, հուզիչ հանդիպման մեջ իրենց ջերմ արտահայտությունը գտան սովետական բոլոր մարդկանց խորին երախտագիտության զգացմունքները ընկերներ Ն. Ս. Խրուշչևի և Ն. Ա. Բուլգանինի նկատմամբ, որոնք պատվով կատարեցին խաղաղասեր սովետական ժողովրդի կամքը։

Դեպի Ասիայի բարեկամական երկրները ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի կատարած պատմական այցը է՛լ ավելի բարձրացրեց մեր Հայրենիքի՝ ժողովուրդների խաղաղության և բարեկամության վեհ գաղափարների այդ մեծ դրոշակակրի ու պատվարի միջազգային հեղինակությունը։

# ԱՎՂԱՆՍՏԱՆ

Ավղանստանը գտնվում է Կենտրոնական Ասիայի հարավ-արևմտյան մասում։ Հյուսիսից նա ավելի քան երկու հազար կիլոմետր երկարությամբ սահմանակից է մեր երկրին, իսկ հյուսիս-արևելքում մի փոքր տերիտորիայով կից է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային։ Արևելքում և հարավում Ավղանստանը սահմանակից է Հնդկաստանին և Պակիստանին, իսկ արևմուտքում՝ Իրանին։ Ավղանստանի տերիտորիան հավասար է 655 հազար քառակուսի կիլոմետրի։

Ավղանստանի բնակչության թիվն է մոտ 12 միլիոն մարդ։ Ընդորում՝ ավղանները կազմում են երկրի բնակչության մոտավորապես կեսը, որոնք հիմնականում ապրում են Պակիստանին սահմանակից մարզերում։ Ավղանստանում ապրում են նաև տաջիկներ (ավելի քան 2 միլիոն), ուզբեկներ (ավելի քան մեկ միլիոն), թուրքմեններ (մոտ 400 հազար)։ Այդ ազգություններն ապրում են Ավղանստանի հյուսիսում, Տաջիկական, Ուզբեկական և Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների տերիտորիաների երկարությամբ ընկած մասում։

Ավղանստանի գյուղական բնակչությունը կազմում



է մոտ 11 միլիոն մարդ, որից մոտ 2 միլիոնը քոչվորներ են։ Ավղանստանի մայրաքաղաքն է Քաբուլը (210 հազար բնակիչ), գլխավոր քաղաքներն են՝ Գերատ, Կանդագար, Մազարի-Շերիֆ, Մեյմենե։

Ավղանստանը սահմանադրական միապետություն է։ Պետության ղեկավարը թագավորն է (փադիշահը)։ 1933 թվականից երկրում թագավորում է Մուհամեդ Զահիր շահը։ Երկրի գործադիր իշխանության օրգանը՝ մինիստրների կաբինետը, նշանակվում է թագավորի կողմից, որը և ենթակա է թագավորին։ Թագավորը գլխավորում է բանակը, հաստատում է պառլամենտի ներկայացրած օրենքները, լուծում է պատերազմի և խաղաղության հարցերը։ Պառլամենտը բաղկացած է երկու պալատից, այն է՝ ընտրովի Ժողովրդական Խորհրդից և թագավորի կողմից նշանակվող Սենատից (անվանի մարդկանց խորհրդաժողով)։ Բացի այդ երկու պալատներից, որոնք նախատեսված են կոնստիտուցիայով, Ավղանստանում գոյություն ունի նաև հատուկ խորհրդակցական օրգան՝ «Մեծ ջիրգա»։ Դա գավառների և մարզերի բնակչության ներկայացուցիչների ժողով է, որ որոշ դեպքերում հրավիրում է թագավորը՝ առավել կարևոր հարցերի քննարկման համար։

Վարչական տեսակետից Ավղանստանը բաժանվում է 7 գավառների և 6 մարզերի։

Ավղանստանը տնտեսապես վատ զարգացած երկիր է, որտեղ գյուղատնտեսության մեջ իշխում են ֆեո-

դալական հարաբերությունները։ Ավղանստանի տնտեսական հետամնացության պատճառներից մեկն այն է, որ նա երկար ժամանակ կախում է ունեցել իմպերիալիստական պետություններից և առաջին հերթին՝ Անգլիայից։ Բավական է ասել, որ սկսած 1880 թվականից Ավղանստանի արտաքին քաղաքականությունը վերահսկում էր Անգլիան, որի հետևանքով նա գրեթե ոչ մի հարաբերություն չուներ մյուս պետությունների հետ։ Միայն 1919 թվականին ազգային-ազատագրական պայքարի ելած Ավղանստանի ժողովուրդը թոթափեց գաղութակալության լուծը և իր երկիրը հայտարարեց անկախ պետություն։ Սակայն, չնայած քաղաքական անկախությանը, Ավղանստանի զարգացմանը ամեն կերպ խանգարում էր անգլիական, իսկ վերջին ժամանակներս էլ ամերիկյան կապիտալը, աշխատելով իրեն ենթարկել այդ երկրի տնտեսական և քաղաքական կյանքը։

Գյուղատնտեսության տեսակարար կշիռը երկրի էկոնոմիկայում կազմում է ոչ պակաս, քան 90 տոկոս։

Մշակվում է երկրի հողային տարածության հազիվ 2,5 տոկոսը։ Այդ հողերի հիմնական մասը (մոտ 80 տոկոսը) պատկանում է խոշոր հողատերերին, որոնք հողը կամ վարձակալության են հանձնում կամ մշակում վարձու բանվորների օգնությամբ։

Գյուղատնտեսության հիմնական ճյուղերն են՝ հացահատիկային տնտեսություն, անասնապահություն, բամբակագործություն, այգեգործություն և խաղողա-



գործություն։ Գյուղատնտեսությունը վարվում է պրիմիտիվ մեթոդներով, նրանում իշխում են ֆեոդալական հարաբերությունները և անգամ պահպանվել է նատուրալ տնտեսությունը։

Ավղանստանում արդյունաբերությունն էլ թույլ է զարգացած։ Բանվոր դասակարգը կազմավորվել է սկսել միայն վերջին տասնամյակներում։ Ներկայումս Ավղանստանում կա ընդամենը 200 հազար բանվոր, որոնցից շատերը աշխատում են տնայնա-արհեստագործական ձեռնարկություններում։ Ավղանստանում արտադրվում են՝ գործվածքեղեն, շաքար, լուցկի և թեթև ու սննդի արդյունաբերության այլ ապրանքներ, որոնք բավարարում են երկրի պահանջի միայն 10—15 տոկոսը, իսկ մնացածը ներմուծվում է արտասահմանից։ Ավղանստանն արտահանում է գլխավորապես կարակուլ, բուրդ, մրգեղեն և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Ավղանստանը հարուստ է հանքային հանածոներով, որոնց արդյունահանությունը, սակայն, դեռևս լայն բնույթ չի կրում։

Երկրում չկան երկաթուղիներ, իսկ խճուղային և գրունտային ճանապարհների երկարությունը հասնում է մոտ 10 հազար կիլոմետրի։

Վերջին տարիներս Ավղանստանի կառավարությունը որոշ միջոցառումներ է ձեռնարկել երկրի տնտեսական և կուլտուրական հետամնացությունը վերացնելու ուղ-

ղությամբ։ Այդ գործում նրան անշահախնդիր օգնու-
թյուն է ցույց տալիս Սովետական Միությունը։
Ավղանստանը մեկն է Արևելքի այն առաջին երկր-
ներից, որոնց հետ մեր երկիրը դիվանագիտական հա-
րաբերություններ հաստատեց Հոկտեմբերյան Մեծ ռևո-
լյուցիայից հետո։ Սովետական կառավարությունը 1919
թվականին առաջինը ճանաչեց Ավղանստանի անկա-
խությունը, իսկ 1921 թվականի փետրվարին ՌՍՖՍՌ-ի
և Ավղանստանի միջև կնքվեց պայմանագիր՝ հիմնված
իրավահավասարության և դիվանագիտական ու առև-
տրական հարաբերություններ հաստատելու փոխադար-
ձորեն շահավետ սկզբունքների վրա։ Այդ պահից ի վեր
անընդհատ աճում և ամրապնդվում է բարեկամությու-
նը մեր երկրների միջև։ Այդ բարեկամությունը, չնա-
յած մեր պետական և քաղաքական սիստեմների տար-
բերությանը, երկու պետությունների բարիդրացիական
համագործակցության օրինակ է հանդիսանում։

Սովետական Միության և Ավղանստանի բարեկամու-
թյունն ու համագործակցությունը խարսխված են ա-
մուր հիմքի վրա, որովհետև երկու երկրներն էլ վարում
են խաղաղասիրական արտաքին քաղաքականություն։
Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նա-
խագահ ընկեր Ն. Ա. Բուլգանինը և ՍՍՌՄ Գերագույն
Սովետի Նախագահության անդամ ընկ. Ն. Ս. Խրուշչևը
Ավղանստանի պրեմյեր-մինիստրի հրավերով անցյալ
տարվա դեկտեմբերին այցելեցին Ավղանստան։ Սովե-
տական Միության պետական գործիչների այդ ուղևո-



րությունը դեպի հարևան բարեկամական երկիրը՝ հնա-
րավորություն տվեց երկու կողմերին ուսումնասիրելու
Սովետական Միության և Ավղանստանի քաղաքական,
տնտեսական և կուլտուրական կապերի հետագա ընդ-
լայնման հնարավորությունները։ Այդ ուղևորությունը
էլ ավելի մերձեցրեց երկու երկրներին և խոշոր ավանդ
հանդիսացավ ամբողջ աշխարհում խաղաղության ամ-
րապնդման գործում։

---

СОДЕРЖАНИЕ



---

Ի. տ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել՝*

ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում: *Երրորդ մաս: Գինը 12 ռ. 30 կ., 870 էջ, տիրաժ 10.000:*

Գր. Սարգսյան— *Հակոբ Հակոբյան: Գինը 6 ռ. 30 կ., 268 էջ, տիրաժ 4.000:*

Ակսել Բակունց— *Երկեր: Գինը 15 ռ., 686 էջ, տիրաժ 15.000:*

Մկրտիչ Կորյուն— *Կամո: Գինը 4 ռ. 40 կ., 201 էջ, տիրաժ 5.000:*

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 2 1956 г.**

*ՎՖ 00563 Պատվեր 72 Տիրաժ 8360*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 50 կոպ.:*